թիւ տեղացի ոստիկաններ: Վերջին 48 ժամուան կռիւներու ընթացքին, գրաւման ուժերը 6 վիրաւոր միայն ունեցած են, իսկ Եգիպտացիները կը հաշուեն 10 մեռեալ եւ 30 վիրաւոր: Բրիտանացիները դիմած են Ֆրանսայի, Նորվեկիոյ, Հոլանտայի եւ Ամերիկայի, Սուէզի նաւարկութիւնը միասին ապահովելու համար:

## Էրզրումի շարժին աւերները

Պոլսէն կը հեռագրեն թէ 93 դիակներ երեւան հանուած են Էրզրումի վերջին երկրաշարժէն, բայց կը կարծուի թէ կորուստները շատ աւելի ծանր են: Երեք ցնցումներ զգացուեցան յունուար 3ին, վերջինը՝ քսան երկվայրկեան, սարսելով հարիւրաւոր հողաշէն տնակներ: Ամէնէն աւելի վնասուեցան Հասան Գալէ եւ Բասենի շրջանը: Հարիւրաւոր տուներ փլան, անպատսպար ձգելով ողջ մնացողները՝ այս ձիւն - ձմրան մէջ: Տակաւին լուր չկայ շատ մը հեռաւոր գիւղերէ:

Վերջին պահուն աւելի ծանրակշիռ լուրեր հասած ըլլալով, հաւանական է որ Հանրապետութեան նախագահը աղէտին վայրը երթայ Հարաւային Թուրքիայէն, ուր քննական պտոյտ մը կը կատարէ այս միջոցին:

Բոլոր զինուորական եւ քաղաքային ուժերը շարժման մէջ դրուած են, օգնութիւն հասցնելու համար: Էրզրումի իշխանութիւնները հազարաւոր վրաններ, մեծաքանակ ուտեստ, հագուստ եւ վառելանիւթ կը պահանջեն սոխպողաբար: (Էրզրում կեդրոնն է Թրքական Գ. զօրաբանակին եւ պարբերաբար ենթակայ երկրաշարժներու):

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱԶԳ. ԺՈՂՈՎԻՆ մէջ եօթը ձայնով մեծամասնութիւն չահելէ վերջ, վարչապետը որոշեց նորէն վստահութեան քուէ պահանջել, ելմտական օրինագծի առաջին յօդուածին քննութեան առթիւ: Այս յօդուածով, կառավարութիւնը կրնայ հրամանագիրներ հրատարակել եւ խնայողութիւններ պարտադրել պետական երկաթուղիներու վարչութեան: Այս քուէարկութիւնը պիտի կատարուի վաղը, երկուշաբթի: Թերթերը գիտել կուտան թէ ժողովը պառակտուած է երկաթուղիներու հարցին առթիւ. այնպէս որ եթէ միջին ճամբայ մը չգտնուի, նախարարական տագնապ մը կրնայ ծագիլ:

ՅՈՒՆԱՍՏԱՆԸ ԵՒ ԹՈՒՐՔԻԱՆ Ատլանտեանի դաշինքին մէջ առնելու համար, Ազգ. Ժողովին արտաքին գործերու յանձնախումբը բանաձեւ մը քուէարկեց 9ի դէմ 22 ձայնով: Բանաձեւը կ'առաջարկէ խնդիրը քննել յունուար 9էն առաջ, երբ կը յետաձգուին նիստերը:

ԹԷՀՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ վարչապետը արտօնած է որ քարիւղ ծախուի Խ. Միութեան եւ արբանեակ պետութեանց: Կը նշանակէ թէ յոյս չունի որ յաջողին միջազգային դրամատան հետ կատարուած բանակցութիւնները: Անգլիա եւ Մ. Նահանգները միասնաբար կը գործեն, բայց Տոքթ. Մոսատեղ միշտ կ'ընդդիմանայ:

ԵԱՔՈՎ ՍՈՒՐԻՑ, Անգարայի եւ Փարիզի նախկին սովետ. դեսպանը, մեռաւ հիւանդութենէ մը վերջ: 70 տարեկան էր: Դիւանագիտական պաշտօններ վարած է 1918էն մինչեւ 1947, երբ հանգստեան կոչուեցաւ:

ՍԹԱԼԻՆԻ ԱՌՈՂՋԱԿԱՆ վիճակը նորէն ծանրացած ըլլալով, Լոնտոնի համայնավար շրջանակներուն մէջ զրոյց կը շրջի թէ եռապետութիւն մը պիտի կազմուի, որուն հաւանական թեկնածուներն են երեք փոխ - վարչապետները,— Մոլոթով, Բերիա եւ Մալենքով: Դեկտեմբերի ընկերը չորս մեծ մասնագէտներ կանչուած են Պերլինէն եւ Վիէննայէն, դարմանելու համար Սթալինը:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Ուրֆայի Հայր. Միութիւնը իր ջերմ շնորհակալութիւնները կը յայտնէ բոլոր այն առեւտրականներուն որոնք իրենց նուէրներով օգնեցին պիւֆէին ճոխացման: Ինչպէս նաեւ բոլոր արուեստագէտներուն, երգիչ կամ պարող, որոնք իրենց սիրայօժար մասնակցութիւնը բերին գեղարուեստական բաժնին: Մասնաւոր շնորհակալութիւն Օր.Ա. Առաքելեանի, նաեւ Պ. Ա. Մեսումենցի իր տքնաջան աշխատանքով հանդէս բերած գեղեցիկ ներկայացման համար:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Այրի Տիկին Յակոբ Օհաննէսեան, Տէր եւ Տիկին Լեւոն Օհաննէսեան, Տէր եւ Տիկ. Նազար Օհաննէսեան, Պ. Միհրան Օհաննէսեան, ինչպէս նաեւ Օհաննէսեան ընտանիքը եւ պարագաները, իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որ անձամբ կամ գիրով եւ նուէրներով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին Պ. ՅԱԿՈԲ ՕՀԱՆՆԷՍԵԱՆԻ մահուան առթիւ:

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)



## ՍԳԱՀԱՆԴԷՍ ԸՆԿԵՐՆԵՐ ՌՈՒԲԷՆԻ ԵՒ ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Կիրակի, 13 Յունուար, ժամը 8.30ին, Salle de Géographie:

Մանրամասնութիւնները յաջորդով:

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՎԱՐԴԱՄԱՏԵԱՆ

(ՀԷՔԵԱԹՆԵՐ ԵՒ ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐ)

ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ — Գին 500 փր.

Դիմել՝ 17 Rue Damesme, Paris (13)

### ՏՕՆԱԾԱՌ

Կազմակերպուած Իսիի Խրիմեան դպրոցի հոգաբարձութեան կողմէ, Յունուար 13ին, կիրակի ժամը 3ին:

Գեղարուեստական բաժին եւ զանազան անակնկալներ:

ԾԱՆՕԹ.— Նոյն օրը պիտի քաշուի հրապարակ ելած վիճակախաղը:

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Կիրակի, 2 Մարտ, կէսօրէն վերջ ժամը 2.30ին, Salle de la Chimie: Կը խնդրուի նկատի ունենալ:

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ, Յունուար 20ի կիրակի օրը, կէսօրէ վերջ, ժամը 3ին, Յոյներու սրահը, 5 rue Bonnefoi:



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Ակնունի ենթակոմիտէն, հինգշաբթի 10 Յունուար ժամը 9ին:

Քրիստափոր ենթ. շաբաթ 12 յունուար, ժամը 9ին: (Շար.)

Ժողովները տեղի կ'ունենան սովորական հաւաքատեղիները: Ներկայ կ'ըլլան Շրջ. Կոմիտէին ներկայացուցիչները:

ԻԹԱԼԻ.— Ֆր. Կ. Խաչի Իթալիի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամուհիները, այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Ժանթիյյի դպրոցը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ:

ՄԱՐՍԷՅԼ.— Պոմոնի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ժողովը՝ 10 Յունուար, հինգշաբթի կէսօրէ վերջ, եկեղեցւոյ կից սրահին մէջ: Ստիպողաբար կը հրաւիրուին բոլոր անդամուհիները:

ՕՐ. ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆԻ այս տարուան միակ Recitalը (Recital bien temperé), Մարտ 20ին, Ecole Normaleի մէջ:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Լիոնի Հայ Ուս. Միութեան նոր շրջանի Ա. դասախօսութիւնը այս չորեքշաբթի, ժամը ճիշդ 21ին, 8 Passage Coste, Քրիստ. երիտասարդաց սրահին մէջ: Նիւթ՝ «Կնոջ աշխատանքը եւ անոր հետեւանքները»: Դասախօս՝ բժ. Յ. Սարաֆեան:

